*Pavlikyan sharzhman gaghap'araxosut'yune" [The Ideology of the Paulician Movement]*, by Hratch Bartikyan, from the journal *Lraber hasarakakan gitut'yunneri [Bulletin of Social Sciences]* (Erevan, Armenia) 8(1979), pp. 94-101, in 8 pdf pages.

# ՊԱՎԼԻԿՅԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆԸ

ՀՐԱՉ ԲԱՐԹԻԿՅԱՆ

*Հայաստանում և Բյուզանդիայում տեղի ունեցած հակաֆեոդալական ընդվզումներից ամենահզորն ու ազդեցիկը պավլիկյան շարժումն էր[1]։ Ծագելով VII դ. կեսերին Արևմտյան Հայաստանում, այն տարածվեց Բյուզանդական կայսրության ողջ արևելքում, մուտք գործեց նաև Արևելյան Հայաստան և դարերով լարված վիճակում պահեց շահագործող դասակարգերին, պետությանն ու եկեղեցուն։ Բյուզանդական կայսրության կողմից Թրակիա բռնագաղթեցված աղանդավորներն իրենց ազատասիրական գաղափարները տարածեցին նաև Թրակիայում, պարարտ հող նախապատրաստելով հետագայում այնտեղ բռնկված դասակարգային շարժումների համար, որոնցից ամենանշանավորը բոգոմիլությունն էր[2]։ Այդ ազատասիրական գաղափարներն ամենատարբեր ճանապարհներով տարածվեցին նաև Արևմտյան Եվրոպայում, հատկապես Իտալիայում և հարավային Ֆրանսիայում, նպաստելով ալբիգոյանների և այլ աղանդավորական շարժումների գաղափարախոսության ձևավորմանը[3]։*

Պատահական չէ, որ պավլիկյան շարժումը ծագեց Արևմտյան Հայաստանում։ Այստեղի բնակչությունը ենթարկվում էր բյուզանդական իշխանությունների քաղաքական, կրոնական, տնտեսական, սոցիալական բազմապիսի ճնշումներին, որոնցից դժգոհ պավլիկյանների դրոշի տակ ընդվզեց կայսրության և նրա եկեղեցու դեմ։ Պավլիկյան շարժման մասնակիցները, որպես կանոն, պատկանում էին աշխատավոր խավերին, հատկապես աշխատավոր գյուղացիությանը[4], բայց հակառակ շարժման միանգամայն աշխարհիկ բնույթին ու դրդապատճառներին, հասկանալի պատճառներով այն հանդես եկավ կրոնական քողի տակ։ «Այն բոլոր ընդհանուր բնույթ կրող հարձակումները,— գրում է Ֆ. Էնգելսը,— որ կատարվում էին ֆեոդալիզմի և ամենից առաջ եկեղեցու դեմ, ինչպես նաև հեղափոխական, հասարակա-

---

[1] Ἰωάν. Ε. Ἀναστασίου, Οἱ Παυλικιανοί. Ἡ ἱστορία καὶ ἡ διδασκαλία των ἀπὸ τῆς ἐμφανίσεως μέχρι τῶν νεωτέρων χρόνων, Ἀθῆναι, 1959, Р. М. Бартикян, Источники для изучения истории павликианского движения (այսուհետև „Источники"), Ереван, 1961 N. Garsoïan. The Paulician Heresy. A Study of the Origin and Development o Paulicianism in Armenia and the Eastern Provinces of the Byzantine Empire, The Hague-Paris, 1967, Ա. Տ. Մելիք-Բախշյան, Հայաստանը 7—9-րդ դարերում, Երևան, 1968, P. Lemerle, L' histoire des Pauliciens d'Asie Mineure d'apres les sources grecques ("Travaux et Mémoires du Centre de recherche d' histoire et civilisation de Byzance", 5, 1973), M. Loos. Dualist Heresy in the Middle Ages, Prague 1974 և այլն։

[2] Д. Ангелов, Богомилството в България, София, 1969.

[3] M. Loos. Dualist Heresy in the Middle Ages, Prague, 1974.

[4] *Աշխատավոր խավերին էր պատկանում պավլիկյան շարժման խոշորագույն աղանդապետը՝ Սերգիոս-Տյուքիկոսը (801—834), որը մինչև իր մահը աշխատում էր որպես հյուսն,*

կան և քաղաքական բոլոր ուսմունքները, միաժամանակ նաև աստվածաբանական հերետիկոսություններ պիտի լինեին։ Տիրող հասարակական հարաբերությունների վրա հարձակումը հնարավոր դարձնելու համար անհրաժեշտ էր հնոտացնել սրբության այն շղարշը, որով սքողված էին այդ հարաբերությունները»[5]։

Պավլիկյան շարժման պատմության, ինչպես և գաղափարախոսության վերաբերյալ մեզ հասած տեղեկությունները հանդիպում են աղանդավորների հակառակորդների գրչին պատկանող երկերում։ Աղանդավորների գրած աշխատությունները չեն պահպանվել, թեև հայտնի է, որ այդպիսիք եղել են։ Նրանց կորստյան հիմնական պատճառը նման գրքեր պահող մարդկանց նկատմամբ իշխանությունների ձեռք առած դաժան միջոցներն էին։ Օրենքով սահմանված էր, որ նման գրքեր պահող անձնավորությունը ենթակա է մահապատժի[6]։ Հայկական և բյուզանդական ժամանակագրություններում և այլ կարգի աշխատություններում արտացոլված են պավլիկյան շարժման առանձին դրվագները միայն։ Աղանդի ամբողջական պատմությունը սկզբից մինչև 869—870 թթ. գրել է հույն վանական Պետրոս Սիկիլիացին[7], որն ի միջի այլոց օգտագործել է հենց պավլիկյանների գրչին պատկանող երկեր, որոնց ծանոթացել է աղանդավորների մայրաքաղաք Տեֆրիկեում (Տիվրիկ), երբ 869 թ. Վասիլ I կայսրի (867—886) հանձնարարությամբ եղել է այդ քաղաքում։ Նա օգտագործել է նաև աղանդապետ Սերգիոս-Տյուքիկոսի նամակները, որոնցից առանձին մեջբերումներ է կատարել իր երկում։ Այդ քաղվածքները որոշակի արժեք ունեն պավլիկյան շարժման գաղափարախոսության ուսումնասիրության համար։

Ավելի քան երկու դար գոյություն ունենալուց հետո պավլիկյան շարժումը 872 թ. ամենադաժան կերպով ճնշվեց Բյուզանդական կայսրության կողմից։ Սակայն աղանդավորներն իսպառ չվերացան։ Նրանք քաշվեցին լեռնային անառիկ վայրերն ու լեռնանցքները և դեռ երկար ժամանակ պահպանեցին իրենց գոյությունը։ Պավլիկյանների մի մասն ապաստան գտավ վադեմի դաշնակից արաբների մոտ, ամենից առաջ Մելիտենեում և Չորրորդ Հայքում, որտեղից, Վասիլ I-ի մահից հետո, վերջինիս որդի Լևոն VI-ի օրոք վերադարձավ կայսրության սահմանները։ Նրանցից ոմանք ծառայության մտան բյուզանդական բանակում և մասնակցեցին արտաքին թշնամիների դեմ կայսրության պատերազմներին[8]։ Աղանդավորների մի մասն էլ ապաստան գտավ արաբական տիրապետության տակ գտնվող Արևելյան Հայաստանում, որտեղ այն ժամանակ լայն տարածում էր գտել պավլիկյաններին եղբայրակից թոնդրակյան շարժումը։ Այս շարժման եթե ոչ ծագման, համենայն

---

5 Ֆ. Էնգելս, Գյուղացիական պատերազմը Գերմանիայում, Երևան, 1940, էջ 46։

6 «Источники», էջ 136։

7 Հունարեն քննական բնագիրը և ֆրանսերեն թարգմանությունը տե՛ս Ch. Astruc, W. Conus-Wolska, J. Gouillard, P. Lemerle, D. Panachryssanthou, J. Paramelle, Les sources grecques pour l'histoire des Pauliciens d'Asie Mineure („Travaux et Mémoires du Centre de recherche d' histoire et civilisation byzantines", 4, 1970։ Ռուսերեն ամբողջական թարգմանությունը տե՛ս «Источники», էջ 117—167։

8 „Theophanes Continuatus Chronographia", ex recognitione Immanuelis Bekkeri, Bonnae, 1938.

դեպս հետագա զարգացման գործում պավլիկյանները պետք է որ մեծ դեր խաղացած լինեն[9]։

Փոքրասիական թերակղզում պավլիկյաններն աստիճանաբար վերացան, բայց նրանք շատ կենսունակ էին Թրակիայում՝ Ֆիլիպպուպոլիս քաղաքում, որտեղ դեռևս VIII դ. կեսերին բնակեցվել էին Կոստանդին V կայսրի կողմից։ Նրանց միացան նաև Հովհաննես Չմշկիկ կայսրի (969—976) կողմից գաղթեցված թոնդրակեցիները[10]։ Աղանդավորները բյուզանդական իշխանություններին մեծ անհանգստություն պատճառեցին հատկապես Ալեքսիոս I Կոմնենոս կայսրի ժամանակ (1081—1118), որը լուրջ միջոցների դիմեց նրանց դեմ։ Թրակիայի աղանդավորներն իրենց գոյությունը պահպանեցին ընդհուպ մինչև XIX դ. վերջը։ Ժամանակի ընթացքում նրանք մոռացան իրենց լեզուն, ծագումը, ձուլվեցին բուլղարների հետ, չնայած միշտ էլ առանձին համայնք էին կազմում և հարաբերության մեջ չէին մտնում ուղղափառ բուլղարների հետ[11]։ XIX դ. սկզբում նրանք ամբողջությամբ կաթոլիկացել էին[12]։

Պավլիկյան շարժման գաղափարախոսությունը մեկ ժամանակաշրջանի արգասիք չէ։ Չնայած մեր ձեռքի տակ եղած նյութերն արտացոլում են պավլիկյան գաղափարախոսությունն իր ավարտուն ժամանակաշրջանում միայն, այն է՝ IX դ., բայց և այնպես դժվար չէ նկատել այն ամենը, ինչ պավլիկյան գաղափարախոսության մեջ մուտք է գործել նախորդած աղանդավորական շարժումներից, հատկապես մանիքեությունից և մծղնեությունից (մեսսալյանությունից)։

Պավլիկյան աղանդի հետևորդների դասակարգային և էթնիկական բազմազանությունը, որն արտահայտվեց շարժման ներսում ժամանակ առ ժամանակ հանդես եկող պայքարում, արտացոլվեց նաև պավլիկյան գաղափարախոսության մեջ։ Մենք հստակ պատկերացում չունենք այդ տարբեր ուղղությունների վարդապետության մասին ընդհանրապես, բայց որ դրանք եղել են, փաստ է։ Այսպես, օրինակ, Փոտ պատրիարքը (857—867, 878—886) պարզ նշում է, որ պավլիկյան գաղափարախոսությունը «բազմաճյուղ» է (πολυσχιδής γὰρ ἡ πλάνη)[13]։

Պավլիկյանների ուսմունքի առաջին և գլխավոր թեզն այն էր, որ գոյություն ունի երկու աստված՝ Բարի և Չար։ Պավլիկյաններն ասում էին, թե «միայն մեկ բան է մեզ բաժանում հռոմներից, այն, որ մենք մեկ աստված ենք համարում երկնային հորը, որն այս աշխարհում իշխանություն չունի, այլ կունենա այն ապագայում, և մի այլ աստված, արարիչն աշխարհի, որն ունի այս աշխարհի իշխանությունը։ Իսկ հռոմները միևնույն աստծուն հա-

---

9 Պավլիկյանների՝ թոնդրակեցիների հետ ունեցած կապերի մասին տե՛ս К. Н. Юзбашян, Тондракитское движение в Армении и павликиане (ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր» (հաս. գիտ.), 1956, № 9, էջ 31—44)։

10 Anne Comnène, Alexiade, ed. B. Leib, t. III, Paris, 1945, էջ 179։ Հմմտ. Հ. Մ. Բարթիկյան, Պավլիկյանների առասպելական ծագումը ըստ հին բուլղարերեն մի ձեռագրի (ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր» (հաս. գիտ.), 1957, № 1, էջ 89)։

11 «Документи за българска история», т. I, архив на Найден Геров, София, 1931, էջ 512։

12 K. Οἰκονόμου, Ἐγχειρίδιον τῆς ἐπαρχίας Φιλιππουπόλεως, Βιέννη, 1819, էջ [illegible]7։

13 „Photii Patriarchae Constantinopolitani, Sermo II contra Manichaeos", Migne Patrologia graeca, t. 102, col. 93.

մարում են և հայր երկնային, և արարիչ ամբողջ աշխարհի»[14]։ Ինչ տեսանելի է (βλεπόμενον), ասում էին պավլիկյանները, այն Չարի ստեղծածն է. Բարի աստծուն է վերաբերում այն, ինչ բանականությանն է վերաբերում (νοούμενον), և աներևույթ է (ἀόρατον)[15], «Բարի աստվածը զգայական ոչինչ չի ստեղծել»[16]։ Աղանդապետ Սերգիոս-Տյուքիկոսը դրա հիման վրա նախնական մեղսագործությունը, որը մարդկությունը ժառանգել է Ադամից «բարեգործություն» էր համարում։ Նա մեղսագործություն էր համարում իր վարդապետությունից հեռանալը կամ այն չընդունելը[17]։

Չար աստծուն, որ իշխում է տեսանելի աշխարհում և միաժամանակ մարդկանց արարիչն է, պավլիկյաններն անվանում էին Սատանա (Σατανᾶν ὀνομάζουσι τὸν ὅλων δημιουργὸν θεὸν ἡμῶν)[18]։ Գրիգոր Մագիստրոսն իր մի թղթում, խոսելով պավլիկյանների մասին, ցույց է տալիս, որ, համաձայն նրանց վարդապետության, Մովսես մարգարեն Սինա լեռան գագաթին ոչ թե աստծուն տեսավ, այլ սատանային[19], հասկանալի է, այս աշխարհի արարչին՝ Չար աստծուն, հետևաբար այն բոլոր պատգամները, որ Մովսեսն ստացավ այդ աստծուց, սատանայի պատգամներն էին։ Իրենց թեզը հաստատելու համար պավլիկյանները դիմում էին Նոր կտակարանին, որտեղ գրված է, թե Քրիստոսը մարդկանց դիմելով ասել է. «Դուք ի հօրէ ի սատանայէ եք, և զցանկութիւնս հօրն ձերոյ կամիք առնել»[20]։ Նրանք մարդկային մարմինը Չարի արարչություն էին համարում և դրանով իսկ մերժում էին հարությունն ի մեռելոց, գտնում, որ մարդն աշխարհում գործած մարմնական մեղքերի համար պատասխանատու չէ, քանի որ մարմինը Չարի արարչություն է[21]։ Պավլիկյանները երկնային՝ Բարի աստծու արարչագործություն էին համարում միայն երկու բան՝ արեգակը և մարդկային հոգին, ընդունում ութ երկնքի առկայությունը, որոնցից յոթն ստեղծել է երկնային աստվածը, որոնց վրա էլ բազմած է։ Պավլիկյանների պատկերացմամբ ութերորդ երկինքն ամենից ցածն է, այն մարդկանց համար տեսանելի է և այս աշխարհի արքա սատանան է ստեղծել[22]։

---

14 Բնագիրը տե՛ս J. Friedrich, Der ursprüngliche bei Georgios Monachos nur theilweise erhaltene Bericht über die Paulikianer, Sitzungberichte der philosophisch-philologischen und der historischen Classe der k. b. Akademie der Wissenschaften zu Munchen, Heft I, 1896, S. 70—81։ Ռուսերեն թարգմանությունը տե՛ս „Источники", էջ 197—207։ Համմ. նաև Պետրոս Սիկիլիացու մոտ. «Источники», էջ 124։

15 „Photii Sermo III contra Manichaeos", col. 152, 165.

16 „Photii Sermo II", col. 93.

17 «Источники», էջ 147։

18 Ch. Astruc..., Les sources grecques pour l' histoire des Pauliciens d' Asie Mineure, էջ 205.

19 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», հրտ. Կ. Կոստանյանցի, Ալեքսանդրապոլ, 1910, էջ 168։

20 «Աւետարան ըստ Յովհաննու», Ը, 44։

21 „Photii contra Manichaeos", Migne, Patrologia graeca, t. 103, col. 1408.

22 „Joannis orthodoxi Disputatio cum Manichaeo", Migne, Patrologia graeca, t. 96, col. 1329; „Photii Sermo II", col. 85, 93; „Euthymii monachi contra Phundagiatas" Migne, Patrologia graeca, t. 131, col. 57.

Եվթիմիոս Զիգաբենոսն իր «Զրահ ուղղափառության» աշխատության մեջ մեսալյաններին (մծղնեականներին) վերաբերող գլխում, որտեղ հիշում է նաև «հայերին» և «պավլիկյաններին», գրում է, որ աղանդավորների վարդապետության համաձայն աստված մարդկային բնությունը չարին է ծառայեցրել։ Դրա հիման վրա աղանդավորները գտնում էին, որ նրանց բոլոր արարքներն անդատապարտելի են և պատժի ու հատուցման ենթակա չեն, հետևաբար մեղքերի դատ ու դատաստան չի լինելու։ Զիգաբենոսի ասելով՝ աղանդավորներն ուժեղ կռվան ունեն առ աստված, թե «Դու մեր բնությունը ծառայեցրիր դևերին, իսկ ծառաները պարտավոր են կատարել այն, ինչ տերերն են հրամայում»[23]։

Փոտ պատրիարքի մի շատ արժեքավոր վկայությամբ, պավլիկյանների ասելով «ագարակները (բնագրում՝ ἀγροί, որ նշանակում է նաև «մշակելի հողեր»), տները Չար աստծու արարչությունն են»[24]։ Վերոբերյալը խոսում է պավլիկյան աղանդի միանգամայն աշխարհիկ բնույթի մասին։ Սոցիալական անհավասարությունն ու ճնշումը, աշխատավոր խավերի կեղեքումն ու աղքատացումը, նրանց հողազրկումը, վերջապես աշխարհում տիրող անօրենությունն ու անարդարությունը պավլիկյանների մոտ չէին կարող այն համոզմունքը չստեղծել, որ այդ բոլորը աստծու, Բարի աստծու գործը լինել չի կարող։ Այդ էր պատճառը, որ պավլիկյանները պայքար էին մղում այդ անհավասարության դեմ, համոզված լինելով, որ պայքարում են Չար աստծու արարչության, նրա հաստատած կարգ ու կանոնի դեմ, որ իրենց պայքարը կմոտեցնի այն օրը, երբ աշխարհում կտիրի Բարի աստվածը, երկնայինը[25]։

Պավլիկյաններն ընդունում էին Քրիստոսին. դեռ ավելին, նրանք իրենց էին ճշմարիտ քրիստոնյա համարում, իսկ բյուզանդացիներին արհամարհաբար անվանում էին հռոմներ[26]։ Այդ մասին վկայում է նաև Հովհան Օձնեցին իր «Ընդդէմ պաւղիկեանց» ճառում։ Նա գրում է. «Եւ զանուանն իւրեանց (պավլիկյանների—Հ. Բ.) զաղտախինս յանդգնեցան կախել զայնցանէ (քրիստոնյաների—Հ. Բ.), որ զերկնից բարութեանցն բուռն հարեալ ունիցին յուսով»[27]։ Բայց ընդունելով Քրիստոսին, պավլիկյանները նրա ծնունդը բացատրում են յուրովի՝ ոչ ինչպես պաշտոնական եկեղեցին։ Պավլիկյանների պատկերացմամբ Քրիստոսը Բարի աստծու որդին է և ոչ թե երկրային՝ արարիչ աստծու։ Քրիստոսը երկնային աստծու մի հրեշտակն էր, որը նրան օգնեց ընդունելու մարդկությանը։ Քրիստոսն իջավ երկնքից, ծնվեց մի կնոջից (Մարիամից), քարոզեց մարդկանց, որ իրենց արարիչը երկնային աստվածը

---

[23] Euthymii monachi Zigabeni Orthodoxe fidei Dogmatica Panoplia", Migne Patrologia graeca, t. 130, col. 1277.

[24] „Photii Sermo II contra Manichaeos„, col. 113.

[25] Սարժման դասակարգային բնույթը պարզվում է և Հովհան Դամասկացու (ճիշտ է, մեսալյանների վերաբերյալ) արձանագրած մի փաստից, համաձայն որի աղանդավորները սիրով էին ընդունում իրենց տերերից փախած ստրուկներին (ծառաներին), սիրով էին ընդունում իրենց դիմող «մեղավորներին», չպահանջելով ապաշխարության որևէ դումար („Joannis Damasceni monachi et presbyteri Hierosolimitani, de haeresibus compendium", Migne, Patrologia graeca t. 94, Col. 733).

[26] „Источники", էջ 124։ Հմմտ. Georgii Monachi Chronicon, p. 721։ Սրանից կարելի է եզրակացնել, որ պավլիկյաններն էթնիկապես սահմանազատվում էին հույներից։

[27] «Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ Մատենագրութիւնք», Վենետիկ, 1953, էջ 50։

չէ, այլ երկրայինը, որը և բնակվում է նրանց մեջ, ապա խաչվեց, հարյավ ի մեռելոց և համբարձավ[28]։ Աղանդավորները Քրիստոսի՝ երկնքից իջած լինելու մասին իրենց վարդապետությունը հաստատում էին Պողոս առաքյալի թղթերով, որտեղ գրված է. «Առաջին մարդն՝ յերկրէ հողեղէն, իսկ երկրորդ մարդն Տէր՝ յերկնից... Եւ որպէս զգեցաք զպատկեր հողեղինին, զգեցցուք և զպատկեր երկնաւորին»[29]։ Այստեղ պետք է նկատել, որ պավլիկյանները, ինչպես և այլ աղանդավորներ, արևին Քրիստոս էին համարում և կոչում։

Քանի որ պավլիկյանները Քրիստոսին համարում էին երկնային աստծու հրեշտակ, ապա պարզ է, որ նրանք չէին կարող Մարիամին ընդունել որպես աստվածածին։ Նրանք գտնում էին, որ Քրիստոսն իր մարմինը իր հետ բերեց երկնքից, իսկ Մարիամը նրա համար սոսկ «խողովակի» դեր խաղաց, որի միջով անցավ Քրիստոսը[30], որ Մարիամը Քրիստոսի «ծննդից» հետո Հովսեփից ուրիշ երեխաներ էլ ունեցավ[31]։

«Աստվածաշունչ» գրքերից պավլիկյաններն ընդունում էին միայն Նոր կտակարանը, բացառյալ Պետրոս առաքյալի երկու տիեզերական թղթերը։ «Նրանք՝ տղամարդիկ և կանայք, քաղաքացիները և գյուղացիները, անգիր գիտեն Ավետարանն ու Առաքյալը,—ասում է Պետրոս Սիկիլիացին։—Կարելի է ապշել,— շարունակում է նա,— տեսնելով, թե ինչպես նրանց մոտ գտնվող դրամադին ստրուկ սկյութները (հավանաբար սլավոնները—Հ. Բ.) նույն գրքերից են ճառում, թեև չեն էլ կարողանում մաքուր հունարեն խոսել»[32]։ Ավետարանի հիման վրա պավլիկյանները մի գիրք էին կազմել, որն անվանում էին «Զորություն»[33]։ Ֆոտ պատրիարքի ասելով՝ պավլիկյանների մեծամասնությունը մերժում էր նաև Ղուկասի ավետարանը[34], հավանաբար այն պատճառով, որ նա սրբացնում է մարգարեներին[35]։ Պավլիկյանները մերժում էին Հին կտակարանն ամբողջությամբ, այն համարում էին սատանայի ստեղծագործություն[36], մարգարեներին անվանում ավազակներ և մոլորեցնողներ[37], չարի արարչություն և չարի սպասավորներ[38], որոնց քարոզածը Չար աստծուց էր ներշնչված[39]։

Բացի Նոր կտակարանից պավլիկյանները սուրբ էին համարում իրենց խոշորագույն աղանդապետ Սերգիոս-Տյուքիկոսի թղթերը, որոնցից մի քա-

---

28 «Источники», էջ 202։

29 «Ա. Թուղթ առ Կորնթացիս», ԺԵ, 47։

30 «Источники», էջ 205—207։

31 Նույն տեղում, էջ 124։

33 „Petri Siculi Sermi I, II, III adversus Manichaeos etiam Paulicianos", Migne, Patrologia graeca, t. 104, col. 1336.

33 Ch. Astruc.., Les sources grecques pour l'histoire des Pauliciens d'Asie Mineure, էջ 205։

34 „Photii Sermo II", col. 108—109.

35 Նույն տեղում, սյունակ 116։

36 Photii Sermo III contra Manichaeos", col. 132.

37 «Источники», էջ 125։

38 „Photii Sermo III contra Manichaeos", col. 129.

39 „Photii Sermo II", col. 97.

նիսի առանձին հատվածների հանդիպում են Պետրոս Սիկիլիացու «Պավլիկյանների պատմության» մեջ։ Այդ թղթերից մեկն ուղղված է Կոլոնիայի պավլիկյաններին, մի ուրիշը՝ ոմն Լևոն Մոնտանացու[40]։ Ավելի ուշ շրջանի «ուղղափառ» հեղինակների տվյալներով, Սերգիոս-Տյուքիկոսն աղավաղել է Սուրբ գիրքը և հատկապես Մատթեոսի ավետարանը. քրիստոնեական ողջ վարդապետությունը Հոր, Որդու և սուրբ Հոգու մասին[41]։

Աղբյուրները որևէ ծանրակշիռ բացատրություն չեն տալիս պավլիկյանների՝ Պետրոս առաքյալի հանդեպ տածած ատելության և թշնամության մասին։ Գուցե պատճառն այն է, որ Պետրոսը համարվում էր եկեղեցու՝ որպես հիմնարկության խորհրդանիշը։ Համենայն դեպս մի փաստ կա, որից կարելի է հանգել այդպիսի եզրակացության։ Գևորգ Վանականի «Ժամանակագրության» էսկուրիալի տարբերակում գրված է, որ իր մկրտության ժամանակ Քրիստոսը տեսավ Պետրոս առաքյալին, որը եկել էր մարդկանց տալու վանականի սքեմն ու հանդերձանքը և որ դրա համար է, որ պավլիկյաններն ատում են նրան[42]։ Այս փաստը մեկ անգամ ևս ընդգծում է պավլիկյան շարժման դասակարգային բնույթը։ Վանականները շահագործող տարր էին հասարակության մեջ և այդ պատճառով էլ պավլիկյանների ատելության առարկան էին։

Պավլիկյանները մերժում էին և՛ եկեղեցին, որը համարում էին «դևերի բնակատեղին» (κατοικητήριον δαιμόνων)[43], և՛ հոգևորականների դասը։ Պետրոս Սիկիլիացու ասելով՝ պավլիկյանները նրանց անունից անգամ խորշում էին[44]։ Իրենց հավաքատեղիները պավլիկյաններն անվանում էին փոխաբերաբար «ուղղափառ եկեղեցի» կամ «աղոթարան»[45], իրենց «հոգևորականներին»՝ «ուղեկիցներ» և «նոտարներ», որոնք «ոչնչով չէին տարբերվում մնացած մարդկանցից ո՛չ հագուստով, ո՛չ էլ ապրելակերպով»[46]։ Պավլիկյանները չէին ընդունում սրբերին, հետևաբար և սրբապատկերները[47], իսկ պատկերապաշտներին կռապաշտ էին անվանում[48]։ Նրանք մերժում էին մկրտության և հաղորդության հոգևոր խորհուրդները։ Եթե նրանք Քրիստոսին համարում էին երկնային աստծու որդի, որը ոչինչ չունի այս աշխարհից՝ սատանայի աշ-

---

40 «Источники», էջ 147։

41 „Euthymii Zigabeni Confutatio et eversio impiae et multiplicis exsecrabilium Massalianorum sectae, qui et Phundaitae et Bogomili", Migne, Patrologia graeca, t. 131, col. 41.

42 «Источники», էջ 199—200։

43 „Euthymii Zigabeni Confutatio", col. 45.

44 «Источники», էջ 126։

45 Նույն տեղում, էջ 139, 200։

46 „Georgii Monachi Chronicon", էջ 724։ Բնագրում՝ «սինեկդեմոս»։ Այդպես են կոչվում «Գործք Առաքելոցում» (ԺԹ, 29) Պողոս առաքյալի աշակերտները։ Այստեղ էլ պավլիկյանները ջանացել են նմանվել իրենց պատրոնին։ Աղբյուրները պահպանել են աղանդապետ Սերգիոս-Տյուքիկոսի «ուղեկիցներից» վեցի անունները՝ Միքայել, Կանակարիս, Հովհաննես, Թեոդոտոս, Վասիլ և Զոսիմոս։

47 Հմմտ. Mansi, Sacrorum conciliorum nova et amplissima collectio, t. XIII col. 157, 181. Պավլիկյանները մերժում էին նաև խաչը („Источники", էջ 125)։ Բայց կան և տվյալներ, որոնց համաձայն աղանդավորները հիվանդանալիս իրենց վրա էին դնում փայտե խաչը, իսկ առողջանալուց հետո ջարդում այն, վառում կամ տրորում։

48 «Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ Մատենագրութիւնք», էջ 46—47։

*խարհից, ապա պարզ է, որ նրանք չէին կարող հաղորդվել հացով ու գինով, մկրտվել ջրով, որոնք այս աշխարհի արարիչ սատանայի արարչագործությունն են։ Հաղորդության հացն ու գինին նրանք սրբությունից զուրկ սովորական հաց ու գինի էին համարում[49]։*

*Վերոբերյալից հասկանալի է դառնում, թե ինչու աշխատավորական խավերը հոծ զանգվածներով հարում էին պավլիկյան շարժմանը, պատրաստ էին խարույկի վրա մեռնել կամ ջրահեղձ լինել՝ պաշտպանելով ֆեոդալական շահագործման դեմ ուղղված նրա գաղափարները։*


## ИДЕОЛОГИЯ ПАВЛИКИАНСКОГО ДВИЖЕНИЯ

РАЧ БАРТИКЯН

### Резюме

Главный тезис идеологии павликиан — учение о существовании двух богов, бога доброго, небесного, и бога злого — сатаны, считающегося ими творцом всего видимого и людей. Бог небесный создал лишь солнце и душу людей, он на земле не имеет власти, здесь властвует бог-творец — сатана. Вся существующая на земле несправедливость — дело рук бога-творца — сатаны. Христос — это один из ангелов доброго, небесного бога, следовательно, Мария не богородица.

Павликиане отвергали Ветхий завет, пророков и святых, принимали лишь Новый завет (без посланий апостола Петра), а также послания ересиарха Сергия-Тихика и свою «святую» книгу, именуемую ими «Сила». Они отвергали также церковь и священнослужителей, таинства крещения и причастия.


---

49 „Photii Sermo III contra Manichaeos„, col. 173· „Euthymii Monachi venerabilis coenobii Peribleptae liber", M i g n e, Patrologia graeca, t. 131, col. 56.